# ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ

ԵՒ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ

ԽՕՍԵՑԱՒ

## ՀՐԱՆՏ ԱՍԱՏՈՒՐ

ԱԶԳԱՅԻՆ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ՊԱՐՏԷԶԻՆ ՄԷՋ

**27 Մայիս 1879**

ՀՐԱՏԱՐԱԿԵԱԼ

Ի ՆՊԱՍՏ

ԿԻԼԻԿԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԻ



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

ԱՐԱՄԵԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

1879

Asatur, Hrant
= Sahmanadrutiwn ew hay...

595

# ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ

ԵՒ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ

31 p.

ԽՕՍԵՑԱՒ

## ՀՐԱՆՏ ԱՍԱՏՈՒՐ

ԱԶԳԱՅԻՆ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ՊԱՐՏԷԶԻՆ ՄԷՋ

**27 Մայիս 1879**

ՀՐԱՏԱՐԱԿԵԱԼ

Ի ՆՊԱՍՏ

ԿԻԼԻԿԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԻ



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

ԱՐԱՄԵԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

1879

# ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ

ԵՒ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ

ԽՕՍԵՑԱՒ

**ՀՐԱՆՏ ԱՍԱՏՈՒՐ**

ԱԶԳԱՅԻՆ ՀԻՒԱՆԴԱՆՈՑԻ ՊԱՐՏԷԶԻՆ ՄԷՋ

**27 Մայիս 1879**

*ՀՐԱՏԱՐԱԿԵԱԼ*

Ի ՆՊԱՍՏ

ԿԻԼԻԿԵԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԻ



ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

ԱՐԱՄԵԱՆ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

1879

# ՁՕՆ

Ա. Թ.

ՔՈՅՐՍ ՎԱՂԱՄԵՌ

# ԱՐՏԵՄԻՍ ԱՍԱՏՈՒՐ

---

Ո՛ անոյշդ իմ քոյր, ոգիդ լուսապար,
Է՞ր կանուխ այդքան մահին փարեցար.
Է՞ր թողիր աշխարհն, ուր բաժինդ էին
Մի սիրտ ոսկիէ եւ գեղ երկնային։

Առաւօտիդ մէջ ճիչաւ քո արեւ.
Տասվեց գարուններդ անցան հեւ ի հեւ.
Դեռ գիշեր չ’եղած, ննջեցիր անկեանք,
Հեռք մայրիկէդ, ցուրտ մարմարին տակ։

Դու ծաղիկ էիր, մի ծաղիկ ’զոր Տէր
Մեր ընտանիքի դրախտին էր ձօներ.
Վա՜հ, դեռ նոր փթթած, խլեց մահն զքեզ,
Եւ խամրեցար դու անցօղ վարդի պէս։

Դու թռչնիկ էիր զուարթ եւ սիրուն,
Շարժեցիր թեւերդ եւ թռար իսկոյն.
Հոգէվարքիդ մէջ յետին շունչիդ հետ
Աւա՜ղ, խեղդուեցան առաջին երգերդ։

Զերդ պայծառ ասուպ, զերդ վաղանց փայլակ,
Եւ զերդ քընարի սիրանոյշ դաշնակ,
Եւ զերդ ձիւնափայլ ալեակ Ովկիանի,
Շատ շուտ մարեցար, ո՜ քոյր պաշտելի:

Եւ զերդ քաղցր սիւզ, որ կ՚անցնի մեղմիկ
Հազիւ համբուրած տերեւ եւ ծաղիկ,
Մեռար, ո՜հ, մեռար հազիւ ողջունած
Երկիր եւ երկին, լոյս, յոյս եւ Աստուած:

Ա՜հ, էր մեկնեցար, կորզեցիր մեր սիրտ
Եւ քեզ հետ տարիր մեր սէր եւ մեր խինդ.
Է՞ր կանուխ այդքան խոյացար առ Էն,
Միթէ մի հրեշտակ չ՚էիր աս արդէն...:

Այլ, աւա՜ղ, գիտեմ, լքեցիր այս կեանք,
Զի աս չը գտաւ քո սիրտ իւր տենչանք,
Զի կանուխ տեսար, ժպտուն եւ լոռին,
Թէ անարժան է աշխարհ անմեղին:

Գիտեմ, չ՚ուզեցիր շնչել աս ուր մարդ
Վիշտով եւ նենգով՝ կ՚ապրի յուսահաս.
Թողիր ամեն փառք, խոյս տուիր ցնծուն,
Թըռ առիր խանդով դէպ անմահութիւն:

Եւ արդ, մինչ հոգիդ ամպերին մէջէ
Ժպտիլով զուարթ մեր վրայ կը հսկէ,
Մինչ Էին առջեւ կ՚հայտաս վեհապանծ
Այլ բիւր վաղամեռ կոյսերէ գրկուած,

— Է —

Մինչ մայրիկդ անոյշ կ'օծէ միայնակ,
Սուգի արտօսրով քո սուրբ յիշատակ,
Նըման լուսնակին, որ պերճ կը ցոլայ
Շող, շաղ սփռելով տապանիդ վրայ,

Մինչ այնքան գեղէդ այժմ աճիւն միայն
Մընացած է աստ, աճիւն սրբազան,
Մինչ մոռցած է 'զքեզ զո՛զ տիեզերք համբուն,
Ես միշտ կը յիշեմ, կ'օրհնեմ քո անուն :

Եւ կը գամ ձօնել, զերդ ճո՛ր մահարձան,
Վեհ յիշատակիդ, այս երկ աննշան.
Խնդրելով որ մերթ դու ալ, Ա՛ՐՏԵՄԻՍ,
Լոյսի դրախտէդ յիշես, օրհնես զիս ...:

Հ. Ա.



## ԱՌ ԸՆԹԵՐՑՕՂՆ

---

Մայիս 27ին, Կոստանդնուպօլսի հայութիւնն ազգային Սահմանադրութեան տասներորդ տարեդարձն կը տօնէր Եէտի-Գուլէի մէջ։ Հիւանդանոցի պարտէզն համախմբուած էին բազմաթիւ Հայեր, ամեն սեռէ եւ ամեն հասակէ։ Հանդէսն մի զուարթ տեսիլ կը ներկայէր. կարծես ամեն սիրտ կը հայտար եւ կը ցնծար. ամեն դէմք աշխոյժ եւ եռանդ կ՚արտափայլէր. յոյսն կը սաւառնէր ամեն ճակատի վրայ։ Ժողովուրդն, որ կարծես կը զգար իւր վեհութիւն, յուզուած կը թուէր այդ վայրի մէջ, ուր արդարեւ մի բարոյական սկայ յաղթանակ կը գար տօնել։

Գերեաշնորհ Իզմիրլեան Սրբազանի ատենաբանութիւնէն յետոյ, բեմ ելայ։ Առաջին անգամ էր որ մի այդքան հոծ խումբի դէմ առ դէմ, կը գայի արտայայտել ինչ որ կը խոհիմ ազգիս եւ հայրենիքիս վիճակին վրայ. առաջին անգամ էր որ առիթ կ՚ունենայի պարզել հրապարակաւ այն անհուն համակրանք եւ յարգանք, 'զոր կը տածեմ առ ժողովուրդն, որ այնքան աղէտ եւ տառապ է կրած, որ, թէեւ առիւծ, գլոցած է իբր գառնուկ խոնարհիլ...։ Յուզուած էի, սիրտս ուժգին կը տրոփէր. խօսեցայ խանդավառ, եւ նոքա, որք ունկնդրեցին ինձ, ներողամտութիւնով ողջունեցին իմ գաղափարներ. Նոքա զգացին գուցէ թէ մի հայրենատենչ սիրտ կը տրոփէ այս լանջի տակ եւ

գիտցան քաջալերել մի դեռահաս էակ, որ այնքան կանուխ եւ այնքան անձնուէր յարած է ճշմարիտ սուրբ դատին:

Այս համակրական ընդունելութիւն որով պատուեցին 'զիս, բարէկամներէս ոմանց թախանձն եւ մի նամակ Մասիսի 2338 թիւին մէջ հրատարակուած, ուր մի ազգասէր երիտասարդ, Գ. Գօղոս Գօյաճեան, կը գար ինձ հրապարակաւ հրաւէր կարդալ որ ի լոյս ընծայեմ ճառս, դրդեցին 'զիս հրատարակել 'զայն: Սակայն, փափագելով մի օգտակար գործի ծառայեցունել այս հրատարակում, որոշեցի անոր գոյացած շահն նուիրել առ Կիլիկեան ընկերութիւն , որ, Տօրոսի լեռերն բնակօղ սրտոտ Հայն կրթել կոչուած լինելով, իբրապէս արժան է մեր նիւթական եւ բարոյական խրախոյսի:

Թող ներուի ինձ ուրեմն, ազնիւ ընթերցօղ, երկրորդ անգամ հրապարակ ելնել եւ ներկայել քեզ այս դոյզն աշխատանք, որ թէեւ չ'է կարէւոր, այլ, թէ չ'եմ սխալիր, կրնայ օգտակար լինիլ իմ դժբախտ ազգի:

Էմիրկեան, 16 յունիս 1879.

ՀՐԱՆՏ ԱՍԱՏՈՒՐ



# ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԻՒՆ

ԵՒ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ



*Հայե՛ր,*

**Ա.**

*Մի ժամանակ կար, ուր մի անհոգի զանկուած էր մարդկութիւնն. Սոսկալի ոճիրներ անպատիժ կը գործուէին ամենուրեք, բռնապետի կամքն օրէնք կը դառնար, հրեշն հրեշտակի քօղին տակ կը դաւէր։ Բռնութիւնն, արդարի արիւնին մէջ թաթախուած, խրոխտով ցոյց կը տար իր յաղթական ճակատ։ Մարդկային խիղճն շղթայի էր զարկուած. առաթուր կը կոխուէր անհատական անկախութիւնն։ Վեհապետն, հիւսիսէն մինչեւ հարաւ, արեւելքէն արեւմուտք, մի տեսակ մահագործ մեքենայ էր յաճախ եւ կրօնականն, քուրմ լինէր թէ մոգ, բրահման թէ քահանայ, յաճախ խռովի եւ մարտի առաջնորդ կը դառնար ընկերական ովկիանին մէջ։ Ժողովուրդն, այդ պաշտելի մայր, որ ծոցին մէջ ծնունդ եւ սնունդ գտած են գրեթէ միշտ աշխարհի դիցական փրկիչներն, խաղալիկ էր եղած ազնուա-*

կանի եւ կրօնականի քմահաճոյքին . ազնուականն նիւթապէս կը նուաստացունէր 'զայն , կրօնականն բարոյապէս . մին մարմինն կը ստրկացունէր , միւսն հոգին կը կաշկանդէր . եւ երկուքն ալ հաւասարապէս կը կապտէին նորա արդար իրաւունք ։ Եւ երբ գտուէր ոք , որ յանդգնէր վեր առնուլ այն խորհրդաւոր քօղ , որ տակ կը ծածկուէին այդ անողոք վատերի ոճիրներն , որ յանդգնէր ցոյց տալ կեղծիքն եւ զեղծումն , նա անվրէպ անարգան եւ կախաղան կը գտնէր ։

Այդ խուլ ժամանակ մի սոսկալի պատուհաս էր աշխարհի ճակատագիրին մէջ ։ Մի անյատակ անդունդ էր այն , որ կը գար խեղդել իւր մէջ ամեն բարոյականութիւն եւ ամեն ազատութիւն ։ Մի անհուն սպունգ էր այն , որ կը գար ծծել անյագօրէն ժողովուրդի արտօսրն եւ արիւնն . . . ։ Տխուր նոճիների շուքին տակ , երկիրն մի մռայլ գերեզման էր դարձած յայնժամ . օրէնն ալ լոկ մի կմախք էր անդ ։ Արդարութիւնն , վեհափառ արդարութիւնն , ամենուրեք լքուած , եղջերուաքաղ կը թուէր եւ իրաւունքն մի ցուրտ երազ միայն ։

Այսպէս հետըզհետէ կը գծծէր մարդկութիւն եւ թշուառութիւնն ընդհանուր կը դառնար . բարոյականն հոգեվարքի մէջ էր եւ Աստուած իսկ , այդ յաւիտենական արեւ , սեւ ամպերով կը ստուերէր գոգ տիեզերական աղջամուղջին մէջ ։



Սակայն , եղբայրներ , եկաւ ժամանակ ալ ուր , մի քանի ժողովուրդի ազատական շարժումներէն յետոյ , որք սահմանափակ արդիւններ միայն ունե-

ցան, մի մեծահրաշ յեղափոխում պայթեցաւ, սոսկալի՛ մարմնաւորում ժողովրդական զայրոյթին. Ֆռանսական յեղափոխութիւն է դա, որ, կատաղօրէն յարձակելով անցեալի դասակարգական ամրոցին դէմ, վեր ի վայր խռովեց աշխարհն։ Տէգառդի սկիզբին հլու, Ռօպէսբիէռի լեգէոնն եկաւ ամեն բան քանդել, որպէս զի ամեն բան վերաշինէ։ Տեսաւ թէ անիրաւ է վեհապետի իշխանութիւնն եւ, կործանելով արքայական գահն, նորա բեկորների վրայ կանգնեց հանրապետական ազատարար դրօշն։ Տեսաւ թէ ընկերական շէնքն խտրական պատուանդանին վրայ բարձրացած է. Նա քայքայեց 'զայն եւ մի նոր շէնք բարձրացուց այն վսեմ պատուանդանի վրայ, 'զոր կ'ընդգրկեն հաւասարութիւն եւ ազատութիւն։ Տեսաւ թէ կղերն, կեղեքելով աղքատն եւ տկարն, հարուստին եւ հըզօրին գործի դառնալով, չարաչար կը գործածէր իւր իշխանութիւն. Նա ցոյց տուաւ թէ աղքատն անկարող չ'է պահանջել իւր բռնաբարուած իրաւունքներ, թէ տկարն ալ կրնայ երբեմն հզօր դառնալ եւ, Վօլդէռի արժանաւոր այլ կրակոտ զաւակ, յախուռն խուժեց կրօնի պաշտօնէային վրայ, որպէս զի լուծէ իւր դարաւոր վրէժ եւ սանձ դնէ նմա։ Դողացին պսակեալ գլուխներն, դողաց ազնուականն, դողաց կղերականն։ Յեղափոխութիւն ակն ընդ ական ի օրէնին հետեւեցաւ. արիւնի դէմ արիւն հոսեցուց, մահ տեղաց մահին դէմ. Իւր վրիժառում վայրագ եղաւ արդարեւ, այլ միթէ ներելի չ'է այս վայրագութիւն մի ժողովուրդի համար, որ գլտցած էր դարեր համբերել, մինչ անհամար ոճիրներ կը ծանրանային իւր վրայ եւ կը թունէին իւր կեանք. Այո, արիւնախանձ Մառա

եւ իւր գործակիցներ անգութ եղան, անխիղճ եղան իւրեանց զոհերի դէմ. այլ ոչ ապաքէն մեծ արդիւնքներն մեծ զոհերէն կը ծնին ։ Ֆռանսական յեղափոխութիւն փրկարար արդիւնքներով պսակուեցաւ. մռնմամբ ուրեմն իւր զոհեր եւ փառաւորեմք այն քաջարի էակներ, որք յղացան եւ ծնան 'զայն ։ Նոքա միացան եւ մարտ մղեցին բռնաւորին դէմ. զոհեցին եւ զոհուեցան, յաղթեցին եւ յաղթուեցան. այլ այն արիւնի մէջ, որ կը հոսէր իբր յորձան, իբր հեղեղ, անցեալն կը խեղդուէր. համակ իւր նախապաշարումներով, իւր անիրաւութիւններով եւ իւր անարդար դասակարգումներով ։



Այդ օրէ մի նոր դարագլուխ կը սկսի մարդկային ազգին համար ։ Նոր գաղափարներ կը գան յուզել մարդկային կառափն. Նոր սկզբներ կը գան արմատանալ ամեն հոգիի մէջ ։ Վանքէ աւելի ճեմարաններ կը հաստատուին, եկեղեցիէ աւելի դպրոցներ կը հիմնուին ։ Ա՛լ չ'են բռնանար խիղճին վրայ, անկախ կը թողուն 'զայն ։ Հաւասարութիւնն բարգաւաճանք կը գտնէ, ազատութիւնն յաղթանակ կը կանգնէ տակաւ առ տակաւ ։ Ժողովուրդն, թագ ի գլուխ եւ մական ի ձեռին, կը բարձրանայ այն գահի վրայ, ուր վեհապետել կոչուած է ։ Անձնիւր ազգ կը զարթի, կը զգայ իւր կոչում, կը պատրաստուի թօթուել անցեալի դծուծ ցնցոտիներն եւ ահա առաջդիմութիւնն կը սկսի իրական դառնալ նիւթական, որպէս բարոյական աշխարհին մէջ ։



Յռանսական յեղափոխումն , Հա՛յեր, այդ փառաւոր արշալոյս տիեզերական յեղափոխումի , այդ անհուն՝ վառարան , ուր կայծերն այսօր ամենուրեք հրդեհ կը ձգեն, մեր մէջ ալ սփռեց իւր կենսաւէտ նշոյլներ ։ Մեր մէջ ալ արձագանգ գտաւ այն բողոքարկու հզօր ձայն , որ անցեալի պատգամին դէմ կը գոռար ։ Մեր մէջ ալ մուտ գտաւ այն ժողովրդասէր ոգի , որ միապետական գաղափարներն անվհատ կը հալածէ եւ կը պաշտէ հաւասարութիւնն ։ Թուրքիոյ հայութիւնն ալ ունեցաւ արի անհատականութիւններ , որք , ազատ շունչով տոգորուն, եկան արդարութիւն անել նմա , սահմանադրական տաճարն բարձրացունելով ։

Այո , 60ի Սահմանադրութիւնն ծրագրող եւ գործադրող վեհոգի յեղափոխականներն Միրաբոյի թոռներն էին ։ Նոքա կը պաշտէին ազատութիւնն , 'զոր Աստուած իբր մեծագոյն բարիք նուիրած է մարդ էակին . Նոքա կը պաշտէին հաւասարութիւնն, 'զոր իբր հիմ պէտք է ունենայ անձնիւր արդար իշխանութիւն . Նոքա կը պաշտէին եղբայրութիւնն , որ անքակ կերպով կը միացունէ մարդերն, որպէս ազգերն ։ Այսպէս ահա 89ի նշանաբանովն բարձրացաւ այն Սահմանադրութիւն , ուր տասներորդ տարեդարձն եկած էք տօնել այսօր Հա՛յեր, զուարթ եւ յուսալից , լի հայրենասիրական խանդավառ զգացումներով ։

## Ե.

Տասին ամերէ յառաջ, այս օրի մէջ, եղբայրներ, մեր ազգ մի մեծ քայլ կ'առնուր դէպ քաղաքակրթութիւն, զի, այն օրէ ի վեր ուր Հայրենիք կորցուցած էր իւր քաղաքական ազատութիւն, նա դիակի պէս անտարբեր մնացած էր գրեթէ աշխարհի առաջդիմական շարժումին առջեւ ։

Կրթական տեսակէտով, մեր վիճակ յոյժ ստորին էր յայնժամ եւ յոյժ խղճալի ։ Ոչ միայն չըկային ուսումի այնպիսի կեդրոններ, ուր հայութիւնն վերածնէր նոր գաղափարով եւ նոր ոգիով, այլ եւ չ'էր ճանաչուած դեռ այն մեծ կոչում, 'զոր դաստիարակութիւնն ունի ընկերական կեանքին մէջ. գիտութիւնն անհաւատութիւն կը թարգմանուէր յայնժամ եւ գիտունն կախարդ կը նկատուէր յաճախ. ռամիկն ոչ միայն անուս էր, այլ եւ մերթ ուսումնատեաց. ժողովուրդն, նիւթին յարած, մի նուաստ կեանք կը վարէր, զիրկ այն ազնուութենէ, 'զոր կրթութիւնն կը պարգեւէ մարդ էակին ։ Հայ Հայրենիքի մէջ գրեթէ անծանօթ էր դպրոցական յարկն. իսկ Կոստանդնուպօլիսի եւ մի քանի ուրիշ կեդրոնական քաղաքների մէջ, թէեւ կային վարժարաններ, այլ դոքա, գրեթէ միշտ, ոչ երկրորդական կրթութիւն կրնային տալ եւ ոչ իսկ նախնական ։ Հայ մանուկն կը գար հազիւ մի քանի տարի անցունել այդ յարկի տակ, այն խոժոռ էակի քով, 'զոր վարժապետ կը կոչէր եւ որ առջեւ կը դողար, որպէս մի բռնապետի առջեւ ։ Եւ արդարեւ դաստիարակն, որ բարձր պաշտօնն ստորնացած էր մինչեւ նատիր, հարուստ դասէն անար-

դուած եւ ժողովուրդէն լքուած, հէգ մանուկէն կը լուծէր իւր վրէժ։ Նա, յաճախ անարժան իւր կոչումի, մի տեսակ ճիւաղ էր հայ զաւակին համար, որ, հազիւ պատանի, կը թողուր վարժարանն եւ, չը գիտնալով թէ ինչ կոչուած էր կատարել իբր մարդ եւ իբր հայ, թէ ո՞յք էին իւր իրաւունքներ եւ պարտեր ընկերական շրջանակին մէջ, հրապարակային կեանքի ասպարէզն կը նետուէր։ Եւ հայրենիք ինչ կրնար յուսալ այդ անհատներէ, որք բարոյապէս խուլ եւ կոյր կը մնային...։

Կրօնական տեսակէտով, չափազանց մոլեռանդ էր Հայն։ Նա այնքան յարեալ էր կրօնին, որ բոլորովին լքած էր ուսումն. Նա այնքան կը զբաղէր եկեղեցիով, որ բոլորովին մոռցած էր դպրոցն, ուր սակայն պահուած է իւր փրկումի գաղտնիքն։ Ազգն անդադար կրօնական խնդիրներով կը զբաղէր յայնժամ, զբաղում, որ կը ջլատէր նորա բարոյական ոյժ. ոմանք կը բաժնուէին մայրենի եկեղեցիի ծոցէն եւ կերթային Պապին կամ Լուտերի ծէսին յարիլ. լուսաւորչականն, դիւրագրգիռ եւ նախապաշարեալ, կը վրդովէր, կը զայրանար եւ անդուլ կը հալածէր 'զայնս։ Եղբայր եղբայրի դէմ ատելութիւն կը տածէր. ազգակիցն ազգակիցին թշնամի կը դառնար. Հայն Հային դէմ կը դաւէր։ Այսպէս, կրօն եւ կրօնամոլութիւն կը գային խոչընդոտ լինել մեր առաջդիմական արշաւի առջեւ։

Ազգային իշխանութիւնի տեսակէտով, հայ ժողովուրդի իրաւունքն առաթուր կը կոխուէր, զի միապետական դրութիւնն յաղթանակ տարած էր յայնժամ. մի պատրիարք ունէր ազգն եւ ամիրայներ իբր տէր եւ իշխան, իբր պաշտպան եւ փաստաբան իւր դատի։ Ամիրայներն ինքնակոչ կը դա-

յին իշխանական մականն առնուլ, ոչ զի արժան էին նմա, այլ զի պատիւ ունէին եւ դրա՛մ։ Նոքա կը գործէին ինչ որ ուզէին. պատասխանատուութիւնն առ ոչինչ կը նկատուէր. զրօ էր ժողովուրդի կամքն։ Իսկ պատրիարքն կամ առաջնորդներն ամիրայի գործիքն էին շատ անգամ։ Այսպէս, ազգային պետերն, կիրքի մարդեր, յաճախ բոլորովին անօգուտ էին մեզ, մեզ, որ ամեն բանէ զրկուած, այնքան պէտք ունէինք ուղղամիտ եւ աչալուրջ հսկողներու։



Սահմանադրութիւնն, եղբայրներ, եկաւ դարմանել բոլոր այս զեղծումներ եւ վերջ տալ այս թըշուառ վիճակի։ Ընդհանուրի քուէով ընտրուած երեսփոխաններն գլուխ կ'անցնէին ազգային գործերին։ Անկանոն եւ անսանձ իշխանութիւնն տեղի կը տար օրէնքին. ամիրայի քմահաճոյքին մեծագոյն մասի ձայնն կը յաջորդէր. մասնաւոր շահերն կը խոնարհէին ընդհանուր շահին առջեւ։ Ժողովուրդն ալ ինքնին պիտի ընտրէր այն աշխատաւորներ, որք իւր բարիքի համար պիտի աքնէին։ Իւր քուէ պիտի երթար արժանաւորն գտնել ոչ միայն հարուստ դասին մէջ, այլ եւ աղքատ դասին մէջ, զի ամիրայն որպէս արհեստաւորն, քահանայն որպէս աշխարհականն, կարօղն որպէս կարօտն իբր հայ հաւասար պիտի լինէին ազգին առջեւ, որպէս հաւասար են իբր մարդ Արարիչին եւ օրէնքին առջեւ։

Մանաւանդ Կոստանդնուպոլսոյ եւ Զմիւռնիոյ մէջ, ուր ապրող Հայերն, արդէն բաւական լուսամիտ, իրապէս ճանաչեցին եւ ըմբռնեցին սահմանադրական կենսաւէտ սկիզբներն, 1860ն մի հրաշալի

ազդեցութիւն յառաջ բերաւ։ Մի մեծ ցնցում տեղի ունեցաւ. հայութիւնն յուզուեցաւ, սարսռաց։ Անհուն խանդով բորբոքեցաւ հայ սիրտն, խորին սէրով վառուեցաւ հայ հոգին առ հայրենիք եւ առ գիտութիւն ։ Հայ երակին մէջ թմրեալ արիւնն սկսեցաւ եռալ վերջապէս ։ Ա՛լ գրէթէ չը մնաց կրօնական մոլեռանդութիւն. մի տեսակ ազգային մոլեռանդութիւն յաջորդեց նմա։ Զգացուեցաւ թէ քանի՛ անհրաժեշտ է դաստիարակութիւնն. միութիւններ կազմուեցան, նորանոր դպրոցներ բացուեցան։ Ոչ ոք զլացաւ իւր ձեռնտուութիւն այս ընդհանուր աշխատանքի. անձնիւր Հայ գիտակից եղաւ ներկային եւ սկսեցաւ քիրտ հեղուլ ապագային համար, որպէս զի փրկուի եւ փրկէ իւր հայրենիք ։



Այսպէս ահա Սահմանադրութիւնն անթիւ բարիքներ կը բերէր մեզ, այլ մեք, երիտասարդի պէս գրգռուն եւ մանուկի պէս անհաստատամիտ, չը գիտցանք յարատեւել մեր գործի մէջ այն եռանդով, որով սկսած էինք եւ չը կրցանք կատարել բոլոր այն առաջադիմութիւնները, 'զորս պարտաւոր էինք կատարել 60 ի ազատական շարժումէն յետոյ։ Մի թեթեւ ակնարկ մեր արդի վիճակի վրայ պիտի հաստատէ այս տխուր ճշմարտութիւն ։



Նախ նկատի առնումք այն Հայեր, որք Կոստանդնուպօլիս կը բնակին ։ Թուրքիոյ մէջ մեր ազգայիններ աստ աւելի քան այլուր լուսաւորեալ վի-

ճակ ունին այսօր. այլ սաստիկ մեծ պակասներ կը զգացուին ։ Թէեւ հայութիւնն այս կեդրոնի մէջ կը վայելէ այսօր սահմանադրական իրաւունքներ, թէեւ իրապէս զգացուած է ուսումի կարեւորութիւնն, թէեւ հայրենասիրութիւնն ծաւալ գտած է մեր մէջ, թէեւ կրօնական խտիրներն եւ նախապաշարումներն նուաղած են, վերջապէս թէեւ Հայն աջողած է քաղաքակրթական բարեփոխումներ կատարել իւր բարոյական կեանքի մէջ, այլ պէտք է խոստովանիլ թէ նա այնպիսի զեղծումներ ունի դեռ, յորոց ամօթ միայն կրնայ զգալ եւ այնպիսի պէտքեր, որք իրապէս կենսական են ։

Սահմանադրական պաշտօնեայներն, որք երբեմն այնքան փոյթով կ'աշխատէին, այսօր անզգայ կը գտուին իւրեանց պարտի առջեւ ։ Ազգային Վարչութիւնն, որ կոչուած է պաշտպանել մեր ազգի շահերն եւ աշխատանք չը խնայել որպէս զի նա զարգանայ հզօրապէս, այսօր հազիւ ներքին վէճերն կը խաղաղէ եւ հազիւ կը լնու մեր անհրաժեշտ պէտքեր ։ Նա հոգ չ'է տանիր արդիւնաւորել հայ հաստատութիւններն. նա չ'աշխատիր ազդու եւ գործադրելի միջոցներով ապահովել ազգային տուրքն. Նա չ'է ջանար նորանոր բարուոքումներ ներմուծել մեր ազգային եւ ընկերական կեանքի մէջ. վերջապէս նա չ'է հայթայթեր այնպիսի միջոցներ, որովք թէ հայաստանցի եւ թէ օտարաբնակ Հայն կարենայ ուսնիլ եւ քաղաքակրթուիլ ։ Մանաւանդ Ուսումնական Խորհուրդն. այդ մարմին ի քուն է կարծես ։ Ով որ այցէ այսօր այն հիմնարկութիւններ, ուր ուսում կ'առնու հայ զաւակն, եւ իմաստասիրէ նոցա վիճակ, պիտի համոզուի այս նկատմամբ ։ Ուսումնական Խորհուրդն մոռցած կը թուի թէ կը

պարտի հսկել ազգային վարժարաններին վրայ . Նա չ՛է քններ թէ արդեօք կը կատարուին անդ զեղծումներ, թէ արդեօք դասերն լաւ մեթոտով կ՚աւանդուին, թէ արդեօք դաստիարակներն արժանաւո՞ր անձեր են . Նա չ՛է փութար մի ընդհանուր եղանակ սահմանել ուսուցումի համար, ընտիր դասագիրքներ պատրաստել կամ պատրաստել տալ, դասախօսական դրութիւնն արդի եւրոպական ձեւին վերածել, հինին տեղ նորն հաստատել . մի բառով, Նա չ՛է լնուր իւր պաշտօն, որ գործադրումն այնքան կարեւոր է Հայաստանի ապագային համար ։

Երբ սահմանադրական պաշտօնեայներն այսպէս անփոյթ կը մնան, արդեօք կրօնական պաշտօնեայներն աւելի օգտակար եւ աւելի անձնուէր են ազգին. — վստահ եմ թէ անձնիւր ոք հակառակն պիտի պնդէ, եւ մեծ իրաւունքով ։ Այսօր կղերն, ընդհանուր կերպով դիտելով, ոչ միայն տգէտ է մեր մէջ, այլ եւ անտարբեր. մեկուսի թողուլով մի քանի լուսամիտ եւ ուսեալ կրօնականներ, որք ազդու քարոզներով կը ճգնին լոյս ծաւալել մեր ազգի մէջ, Նա հեռի է իւր կոչում ճանաչելէ. տգիտութիւնն հաւրացուցած է 'զայն, աղքատութիւնն նուաստացուցած է 'զայն. Նա ոչ միայն չ՛է փափագիր, այլ եւ չ՛է կարող ժողովրդի բարիքն մտածել եւ օգտակար լինել նմա ։ Կղերի այս տկար եւ ապիկար վիճակ շատ դէշ հետեւանքներ կ՚ունենայ, մանաւանդ դրէթէ մի քառորդ դարէ ի վեր, ուր մեր մէջ սկսած են մուտ գտնել ուսում եւ ազատամտութիւն. դա կը բառնայ ոչ միայն այն յարգանք, 'զոր առ ինքն կը տածեմք, այլ եւ այն հաւատ, այն սէր, որով կրօնին յարած է հայութիւն. եւ աւելորդ է բացատրել սոտ թէ քանի մահաբեր է մեր ազգի համար ո եւ է շարժում դէպ

անկրօնութիւն։ Բոլոր այն ժողովուրդներ, որք, մեզ նման, չ'ունին քաղաքական եւ զինուորական իշխանութիւն, պէտք է կրօնն պաշտեն իբր միակ մխիթար, իբր միակ ապաւէն իւրեանց ազգային կեանքի։ Այս, մեր ճակատագիրի մէջ մի կենսական տարր է դա. մի վահան է դա, որ արիութիւն կը տայ եւ, առանց դրա, անհնար է մեզ անվհատ ընթանալ առաջադիմական ասպարէզին մէջ։ Սակայն նաեւ, Հայեր, ո՛չ ապաքէն այն կրօն, ում կ'երկրպագէ այսօր քրիստոնէայն եւ 'զոր Գողգոթայի աստուածային նահատակն ուսոյց եւ քարոզեց մարդկային ազգին, իւր հիմի մէջ, զերծ ամեն նախապաշարումէ, զերծ ամեն արտաքին զարդէ, վսեմ է եւ պաշտելի. ո՛չ ապաքէն նա, այնպէս որպէս մեր խիղճ կ'ուսուցանէ 'զայն մեզ, մի աղբիւր է որ գոհութիւն, անդորրութիւն եւ երջանկութիւն կը ծաւալէ մարդկային ազգին մէջ. ո՛չ ապաքէն նա, որքան ալ որ սուտ հաչակուի եւ մերժուի այն բազմաթիւ հայ երիտասարդներէ, որք աշակերտած են Գիւխնէրի եւ Լիդռէի, կը զօրացունէ մարդ էակն եւ, բարոյականի սուրբ սկիզբներուն սնուցանելով, կ'առաքինացունէ եւ կը վսեմացունէ 'զայն...։ Այսպէս, ըստ ինձ, մանաւանդ մեզ համար, մի աններելի ոճիր է անհաւատութիւնն. թող քարկոծեն, որքան որ ուզեն, կրօնամոլութիւնն, աւելորդապաշտումն, նախապաշարումն. այլ երբ խնդիրն կրօնին կը գայ, թող կանգ առնուն անդ. ով որ կ'անցնի այդ սահմանէ անդի, չ'է շահիր երբէք, միշտ կը վնասէ։ Ուստի, պէտք է ջանալ որ նիւթապաշտութիւնն նոր կուսակիցներ նոր քարոզիչներ չ'ունենայ մեր մէջ. պէտք է ջանալ որ հաւատն, որքաղան հաւատն չը ջնջուի հայ սիրտէն։ Եւ այս, գլխաւորապէս կղերէն կախումն ունի. երբ

նա գիտնոյ աւելի ազատամիտ, աւելի բարի, աւելի անշահախնդիր լինիլ, յայնժամ նաեւ ժողովուրդն աւելի հաւատացեալ, աւելի բարեպաշտ կը դառնայ։ Այս համոզումով, ես այնպէս կը կարծեմ թէ կղերն պէտք է ունի եւ լաւ ունի ինչ որ անհրաժեշտ է նմա իւր նուիրական կոչումի մէջ. պէտք է որ կղերական վարժարաններ ունենամք, ուր դան կրթութիւն առնուլ նոքա, որք կը պատրաստուին կրօնի պաշտօնեայ լինիլ։ Սակայն չ'եմ կրնար փափագիլ նաեւ որ հայ կղերն իւր ուսմամբ մի յոյժ բարձր դիրք առնու, զի համոզուած եմ թէ յայնժամ նա, գոռոզացած, պիտի ջանայ վարել մեր մէջ այն դեր, 'զոր վարած է եւ կը վարէ հռոմէադաւան կղերն Եւրոպայի մէջ, եւ այսպէսով աւելի վնասակար պիտի լինի քան 'զոր չ'է այսօր։

Գալով մեր կրթական վիճակի, կրնամ ասել թէ գոհացուցիչ չ'է այն. Հայ մանուկի ապագայն պէտք եղածին չափ նկատի չ'առնուիր այսօր. գրեթէ չը կայ մի հայ վարժարան, ուր մի իրական դաստիարակութիւն աւանդուի նմա. նա ոչ իսկ երկրորդական ուսումների շրջանն կրնայ աւարտել յաճախ, թող բարձրագոյն կրթութիւնն. Այս պարագայի մէջ, կարող հայերն կը ստիպուին օտար վարժարաններ յղել իւրեանց զաւակներ կամ տունն ուսում աւանդել տալ նոցա, ուր ընդհանրապէս մի օտար կամ անկատար դաստիարակութիւն միայն կրնան առնուլ. Իսկ այն հայերը, որք չ'ունին նիւթական մեծ կարողութիւն, տեսնելով թէ իւրեանց զաւակներ մեծ բան չ'են ուսնիր վարժարանին մէջ, նախընտիր կը համարին խզել 'զայնս անտի եւ աշխարհի մէջ դնել անուս էակներ, որք, թէ չարունակէին ապրիլ ուսումնական կեանքի մէջ, գուցէ

Հայ Նիւդըններ եւ Հայ Իւկօներ լինէին մի օր... ։

Մանաւանդ իգական սեռի դաստիարակութիւնն . — այդ մեծ խնդիր, որ այնքան աւագ կարեւորութիւն ունի քաղաքակիրթ աշխարհին մէջ, բոլորովին մոռցուած եւ մեկուսի թողուած է ի մէնջ ։ Ցաւով կ'ասեմ 'զայն, այսօր շատ քիչ Հայ օրիորդներ կան, որք պատրաստուին արժանաւոր ամուսին եւ ճշմարիտ մայր լինիլ. շատ քիչեր կ'առնուն այն սկիզբներ, որովք կինն մի տեսակ հրեշտակ կը դառնայ եւ Նախախնամութիւնի դերն կը կատարէ ընտանիքին մէջ ։ Եւ քանի ցաւալի է տեսնել թէ Կոստանդնուպօլիսի քրիստոնեայ հասարակութիւններէն միայն մե՛ք այսքան անտարբեր կը մնամք այս պարագայի մէջ ։ Ամեն անգամ որ կ'անցնիմ Բէրայի փողոցներէն, երբ առաւօտ է կամ երեկոյ, մի վըսեմ տեսիլ կը ներկայի աչքիս առջեւ, որ սիրտս խորին յոյզով կը համակէ ։ Ամենուրեք կը տեսնեմ բազմաթիւ աղջիկներ, որք, թեւ ի թեւ, ուրախ եւ կայտառ, դպրոց կ'երթան կամ դպրոցէ կը դառնան ։ Դոքա Եւրոպացիներ են կամ Յոյներ, որք խմբովին կը դիմեն զանազան բարեկարգ վարժարաններ եւ մի ընտիր կրթութիւն կ'առնուն անդ. եւ ինձ այնպէս կը թուի թէ այդ էակներու ճակատին վրայ, ուր Աստուած կարծես մի խորհրդաւոր պսակ է հիւսած, ճշմարիտ մայրութիւնն քանդակուած է լուսատառ. ինձ այնպէս կը թուի թէ դոքա օրհնեալ դիցազնուհիներ պիտի դառնան ապագային մէջ, ուր օգտակար մարդեր պիտի լինին անշուշտ այն զաւակներ, որք այդ ծունկերու վրայ պիտի սնին եւ մեծնան ։ Եւ երբ բաղդատեմ դոցա հետ Հայ իգական սեռի նոր սերունդն, մի անհուն կսկիծ կը լնու հոգիս ։ Աւա՜ղ, մեք չ'եմք պատ-

րատեր ապառնի հայութիւնին այնպիսի մայրեր , որք ներշնչեն նմա հայրենիքի սէրն եւ բարոյականի սկիզբներն , որք ստանան ընկերական եւ ընտանեկան կեանքին մէջ այն վեհափառ ազդեցութիւն , որ այնքան սիրելի է եւ այնքան փրկարար ։ Մեք չ'եմք պատրաստեր հայ ապագային համար ինչ որ պիտի վսեմացունէ նորա ոգի · մեք չ'եմք նուիրեր նմա այն կենսատու լոյս , որ պիտի պարզէ նորա խաւար . . . ։

Պէտք է դարման տանիլ կրթական խնդիրի այս լքուն վիճակի եւ այն , ազգային վարժարաններն բարեկարգելով եւ ուսումնարաններ բանալով միայն կրնայ կատարուիլ ։ Բաղցր է ինձ յուսալ թէ Ուսումնական Խորհուրդն , ալ թողլով իւր անփութութիւն , պիտի ընէ այս առաջին գործ , որ յոյժ կարեւոր է · գալով երկրորդին , որ կարեւորագոյն է , ես այնպէս կը կարծեմ թէ մեք կը պարտիմք կազմել Կոստանդնուպօլիսի մէջ մի Կեդրոնական Միութիւն , որ նպատակ ունենայ թէ՛ արական եւ թէ՛ իգական սեռի համար երկրորդական կամ բարձրագոյն վարժարաններ բանալ աստ , գիշերօթիկ եւ ցերեկեայ ։ Շահնազարեան վարժարանն , որ այսօր անունով միայն կ'ապրի , շատ կրթեալ երիտասարդներ նուիրեց հայ աշխարհին եւ ազդու կերպով ցոյց տուաւ թէ քանի՛ կարեւոր են մեզ համար նմանօրինակ հաստատութիւններն . աւելորդ է ուրեմն բացատրել ձեր առջեւ այն բազմադիմի օգուտներ , 'զորս Հայն պիտի կարենայ քաղել ի դոցանէ · ինչ որ սակայն կը պարտիմ յայտարարել աստ , սա է թէ այդպիսի վարժարաններ այսօր գրեթէ չ'ունիմք բնաւ եւ թէ աններելի է մեզ դեռ յապաղել նոցա բացումն · ուստի կը խնդրեմ ազգիս կարող հայրերէն

եւ հայրենասէրներէն որ մի պահ խորհին նաեւ իւր-եանց զաւակների ապագային վրայ եւ ձեռնարկեն կազմել Կեդրոնական Միութիւնն, որ յոյժ արդիւ-նաւոր պիտի լինի մեր գրկեալ ազգի համար ։



Այժմ նկատի առնումք նաեւ գաւառացի Հայերն, որք թէեւ բարոյապէս զարթած են վերջին տասն-ամեայ ժամանակամիջոցին մէջ, այլ նոցա վիճակ, աննշան բարեփոխումներ միայն կրած, շատ եւ շատ իսկ դառն է մինչեւ այսօր ։

Սահմանադրութիւնն գործադրուեցաւ նոցա մէջ, այլ անպատրաստականութիւն եւ անտարբերու-թիւն, նիւթական ծանր պէտքեր եւ գրկանքներ ամուլ թողին 'զայն ։ Կազմուեցան գաւառական ժո-ղովներ, որք կը պարտին ազգային եկամուտներն տնտեսել, ծախքերն չափաւորել եւ, գաւառական սնտուկն հարստացունելով, մի լուսաւոր ապագայ պատրաստել ժողովուրդին. այլ պէտք է խոստո-վանիլ թէ գաւառներին մէջ, ի բաց առեալ Զմիւռ-նիան, ազգային ժողովներն ոչ մի կարեւոր արդիւն կրցան յառաջ բերել, զի դժբախտաբար կը պակ-սէին եւ կը պակսին դեռ նոցա այն տարրներ, որք անհրաժեշտ են մի վարչական մարմինի համար ։ Արդարեւ ցաւալի վիճակ ։

Գաւառացի Հայն սկսաւ սիրել դաստիարակու-թիւնն եւ զգաց թէ քանի՜ օգտակար է այն ։ Զա-նազան ընկերութիւններ ծնունդ գտան Կոստան-դնուպօլսի մէջ, մանաւանդ մի քանի ամերէ ի վեր, նպատակ ունենալով կրթել մեր գաւառացի ուսում-նազիրկ ազգակիցներ. եւ այդ ընկերութիւններ,

հապիւ կեանք առած, գործել սկսան, գործել փոյթ-եռանդ։ Նոքա դպրոցներ բացին եւ կը բանան Հայաստանի եւ Կիլիկիայի մէջ, վարժապետներ եւ գիրքեր կը յղեն, կրթութիւն եւ գիտութիւն կը տարածեն անդ համասփիւռ։ Այս ընկերութիւններէ զատ, Սեբաստիայի, Կարինի, Երիզայի, Վանի, Բաբերդի եւ այլ քաղաքների մէջ ուրիշ հայ միութիւններ ալ կը կազմուին եւ ըստ կարի կը ձեռնարկեն լոյս ջամբել իւրեանց հայրենիքի ապագային, դաստիարակելով հայ մանկութիւնն եւ պատանեկութիւնն։ Այս հաւաքական աշխատանքներ, թէ չը լինին վաղանցիկ, կը խոստանան խլել զմեզ այն անդունդէ ուր գլորած եմք. Նոքա մի հայ սերունդ կը պատրաստեն, որ, կրթական լոյսով տոգորուն, աւելի անձնուէր պիտի լինի անոր Հայաստանին եւ պիտի գայ դարմանել նորա դարաւոր խոցեր։

Սակայն այսօր, աւա՜ղ, գաւառաբնակ հայ սերունդն յոյժ տխուր կացութիւն ունի. Նա տգէտ է եւ նախապաշարեալ. Նա չ՚է գիտեր թէ ինչ է ազգութիւն, ինչ է բարոյականութիւն, ինչ է քաղաքակրթութիւն. Նա մի կոյր էակ է գժգ, որ չ՚է տեսնէր արեւն եւ կը թափթափի աղջամուղջին մէջ։ Բարոյապէս ընկճուն, նիւթապէս ընկճուն, նա մի տեսակ գծուծ բառիա է դարձած, բառիա, որ ճակատին թուք եւ նախատ կը տեղան։ Աշխատասէր է նա, այլ իւր աշխատանքի պտուղն զոհ կ՚երթայ վայրագ Քուրդին. ընտանէսէր է նա, այլ հանգիստ չ՚ունի երբէք իւր ներքին կեանքի մէջ, զի ինչքի, անձի եւ պատուի անապահովութիւնն սուր ի ձեռին կը սպառնայ միշտ նմա։ Վայրի հրոսներէ շրջապատուած եւ հարստահարուած, նա թշուառ է եւ իրապէս թշուառ. աղէտի եւ հեծեծանքի մի երկար

հիւսք է նորա կեանք. ամենօրեայ եւ բազմավրիշա հողէվարք . . . ։

Հայ կղերն, ազգային այս ընդհանուր աւերումի առջեւ, ոչինչ կրնայ գործել, զի յաճախ այնքան տգէտ է, որքան մի պարզ գեղջուկ ։ Գաւառներին մէջ, քահանայութիւնն մի արհեստ է դարձած. քահանայն մի մեքենայ է գոգ, որ կը պատարագէ, կը մկրտէ, կը խոստովանէ, կը հաղորդէ, կը պսակէ եւ կը թաղէ. անոր դուրս, ոչ ուրիշ պաշտօն չը գիտէ վարել. Ինչ փոյթ նմա թէ ժողովուրդն աւելորդապաշտ է, անուս է, անտէր է. Նա կը կատարէ եկեղեցական ծէսերն. Ինչ կը պարտի աւելի քան 'զայս . . . ։ Այլ սակայն այդ չ'է միայն նորա կոչում. Նա մի բարձրագոյն պաշտօն ունի վարելիք ։ Քահանայն անհրաժեշտ է եկեղեցիին մէջ, այլ, եկեղեցիէն դուրս, աւելի անհրաժեշտ է նա. Նա ոչ միայն կրօնական պաշտօնեայ պէտք է լինի, այլ եւ ժողովրդական պաշտօնեայ ։ Նա կը պարտի հայր լինել նոցա, 'զորս կը հովուէ ։ Նա կը պարտի խլել ժողովուրդի բարոյական կեանքէն ամեն զեղծում եւ ամեն կուրութիւն. Նա կը պարտի ջնջել նախապաշարումն եւ վհատանքն, եւ անդուլ քարոզել աշխատութիւն, յարատեւութիւն եւ լուսաւորութիւն ։ Հայ քահանայն անկարող է կատարել 'զայս, ուստի եւ կը թողու որ մեր գաւառացի անբախտ եղբայրներ հեծեն եւ հիւծին միշտ այն նուաստ կեանքի մէջ, որով կ'ապրին ։

Գաւառական առաջնորդներն եւ վանաքնակ կղերականներն, թէեւ աւելի ուսեալ, աւելի օգտակար չ'են սակայն մեր եղբայրներին համար ։ Առաջնորդն մոռնալով թէ կոչուած է խղճմտօրէն հովուել իր ժողովուրդ, չ'է հոգար 'զայն այնպէս որպէս

կը սպառի ։ Նա ազդու կերպով չ՚է կարող պաշտպանել նորա իրաւունքներ ։ Նա յաճախ իւր շահ միայն կը մտածէ ։ Նոր ատրճաններ առնուլ, փառաւորուիլ եւ մեծարուիլ. այս է իւր երազ, որ իրացումին համար նա ոչինչ կը խնայէ, ոչ իւր հանգիստ, ոչ իւր խիղճ եւ ոչ իսկ իւր ազգ ։ Եւ սա՛ պիտի պաշտպանէ գաւառացի գրկեալ Հայի դատն, եւ սա՛ պիտի ջանայ բարւոքել նորա վիճակ . . . ։ Իսկ երբ իմաստասիրեմք վանական կեանքն, յայնժամ պիտի ստիպուիմք բոլորովին քամահել հայաստանցի կղերն ։ Վանականին, մեր հայրենիքի մէջ, վանքի խորն թաղուած, ապուր ուտել եւ մաղթանք անել միայն գիտէ. նա չ՚է աշխատիր բնաւ արդիւնաւոր լինել ։ Այնքան վանքեր ունիմք, այլ գրեթէ ոչ մին ի նոցանէ օրինաւոր դպրոց, տպարան եւ արժանաւոր աշխատողներ ունի ։ Մեր վանքեր, որք երբեմն ուսումի կեդրոններ էին, այսօր անկելանոցներ դարձած են կարծես, ուր խումբ խումբ նօթի դատարկապորտներ հաւաքուած, ազգի հացն ծրի՛ կը ճաշակեն, փոխարէն աղօթքներ մռմռալով եւ պահք բռնելով, իբր թէ բաւ լինէր դա մի ժողովուրդի փրկումին համար . . . ։ Ազգային Վարչութիւնն դեռ անտարբեր պիտի մնայ այս պարագայի մէջ. նա պիտի հանդուրժէ՞ դեռ այս պեղծումի. չը գիտեմ. այլ ինչ որ գիտեմ, սա է թէ վանքերն կրնան լուսաւորիչ եւ կենսաւէտ արեւներ լինել մեր հայրենիքի համար, երբ կառավարուին փորձառու եւ անտեսագէտ անձերէ ։



Այսպէս, ըստ ինձ, թէ Կոստանդնուպոլսի մէջ եւ թէ գաւառներն, մեր ազգ պէտք ունի այսօր

ընդհանուր բարէնորոգումի ։ Ջանանք ուրեմն հայթայթել մեզ բոլոր այն տարրներ, որք այդ մեծ արդիւն յառաջ պիտի բերեն ։ Ջանանք կրթել հայ մանուկն եւ մանկուհին, այնպէս որպէս կը պահանջէ ճշմարիտ քաղաքակրթութիւնն ։ Ջանանք վերաքննել մեր Սահմանադրութիւն, որ, ինչպէս կը վկայէ մի տասնամեայ փորձառութիւն, պէտք ունի հիմնական բարեփոխումի ։ Ջանանք ազնուացունել կղերի վիճակն, որ գծծումն ծանր զեղծումներ առթելով, սկսած է արդէն յոյժ վնասակար լինել մեզ ։ Ջանանք մշակել մեր գրականութիւն, եւ լսարաններով, գիրքերով, թերթերով լուսաւոր գաղափարներ տարածենք անընդհատ մեր ժողովուրդի բոլոր խաւերին մէջ ։ Ջանանք մի ազգային հանդէս հրատարակել տաս կամ Եւրոպա, Փռանսերէն եւ անկլերէն լեզուով, որպէս զի ծանօթացունենք քաղաքակիրթ աշխարհին թէ ինչ է հայութիւն, թէ ինչ եղաւ իւր անցեալ եւ ինչ է իւր ներկայ ։ Ջանանք զօրացունել հայ միութիւններն, որպէս զի նոքա կարենան յարատեւութիւն ունենալ, չը կասելով երբէք իւրեանց ընթացի մէջ ։ Ջանանք ձեռք առնուլ այնպիսի միջոցներ, որովք կարելի լինի իրացունել կեդրոնացուցիչ դաղթականութիւնն եւ արգելուլ Արամի կարիճ զաւակին օտար քաղաքներ պանդխտելն ։ Ջանանք ծաւալել Հայաստանի մէջ գլխաւոր արուեստներն եւ արհեստներն, մանաւանդ երկրագործութիւնն, եւ աշխատիմք անխոնջ, որպէս զի արմատախիլ լինի մեր հայրենիքէ տգիտութիւն եւ աղքատութիւն, այդ երկու դժոխային ամոլներ, որք թշուառութիւնն կը ծնին ։ Վերջապէս ջանանք հզօր կապերով միացունել Թուրքիայի, Ռուսիայի, Պարսկաստանի, Ռումանիայի, Հնդկաստանի եւ բոլոր աշ-

խարհի Հայերն եւ այսպէս , Նոր կորովով զինուած , մտնեմք այն լուսալից շաւիղի մէջ , ուստի Եւրոպա եւ Միացեալ-Նահանգներն սրարշաւ կը խիզախեն դէպ կատարելութիւն . . . .

## ԺԱ.

Օ՛ն , եղբայրներ , գործեմք փութով ։ Ա՛լ թողումք ատելութիւններն , կուսակցական վէճերն եւ կռիւներն ։ Մի սիրտ ունենամք , մի գաղափարով տոգորուիմք ։ Կրօնական խտիրներէն վեր լինիմք մեք . դոքա պէտք է լռեն երբ ազգի հասարակական բարիքն է որ կը խօսի ։ Ձեռք ձեռքի տամք ուրեմն եւ յառա՛ջ անցնիմք ։ Մեք չը դողամք երբէք , մեք չը կասիմք երբէք , մինչեւ ողջունեմք այն երեք սիրական եւ լուսագեղ քոյրեր , որք , մարդկային ապագայի բարձրագոյն կատարին վրայ , երջանկութիւնն իբր պատուանդան ունենալով , մեզ կը սպասեն գրկաբաց . ոչ , չը վհատիմք մեր արշաւի մէջ , Հա՛յեր , մինչեւ չ'աշխարհակալեմք այն լոյսի բնագաւառ , ուր կը սաւառնին յաւիտենապէս « Ազատութիւն , Հաւասարութիւն եւ Եղբայրութիւն » ։

